ԼԵՆԻՆՅԱՆ ՊԻՈՆԵՐԻԱՆ ԲՈԼՈՐԵՑ
ԻՐ ՓԱՌԱՊԱՆԾ ԳՈՅՈՒԹՅԱՆ 50 ՏԱՐԻՆ




digitised by A.R.A.R.@

# ԱՅԴ ՓԵՆՔ ԵՆՔ ՔԱՅԼՈՒՄ



ԳՐԻԳՈՐ ՄԱԶՄԱՆՅԱՆ

Թնդա՛, մեր թմբո՛ւկ պիոներական,
Ծփացե՛ք հպարտ, դրոշնե՛ր բոսոր.
Այդ մենք ենք քայլում շարքով հաղթական,
Մեր ապատ երգն է թևածում այսօր:

Բաց են ճամփեքը մեր դեմ գալիքի,
Մեր սրտերը՝ տաք, հույսերը վառ են,
Մեզ լույս աստղերն են կանչում երկնքի,
Լուսնի վրա էլ խարույկ կվառենք:

Ծփա՛, մեր դրո՛շ, ծփա՛ վեհորեն,
Քայլի՛ր դու հպարտ, լենինյա՛ն սերունդ.
Քեզ մայր արևն է ժպտում ջերմորեն
Ու կանչում է քեզ լուսեղեն հեռուն:

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

1922 թվականի մայիսի 19-ին կոմերիտմիության համառուսաստանյան խորհրդակցությունը որոշեց Մոսկվայի օրինակով պիոներական ջոկատներ ըստեղծել մեր հայրենիքի բոլոր քաղաքներում:

Այդ օրվանից 50 տարի է անցել:

Առաջին պիոներները վաղուց անցնելով նաև կոմերիտմիության բովով, կոմունիստներ են դարձել, նրանց փոխարինելու են եկել նորանոր սերունդներ, և այսպես հերթը եկել ձեզ է հասել, այսօրվա՛ պիոներներ:

Իր փառապանծ գոյության 50 տարիների ընթացքում, մեր երկրի պիոներիան, Սովետական Միության կոմունիստական կուսակցության և կառավարության ամենօրյա ջերմ հոգատարության ու գուրգուրանքի ներքո, լենինյան կոմերիտմիության ջանադիր ղեկավարությամբ, ապրում, պայքարում, աշխատում և սովորում է, հավատարիմ՝ լենինյան ավանդներին:

Մեծ Լենինի անունն արժանավորապես կրելու համար, 1962 թվին, իր գոյության քառասնամյա տարեդարձին, նա պարգևատրվեց Լենինի շքանշանով:

Անցել է ևս տասը տարի: Սովետական Միության պիոներիայի տարեգրությունը հարստացել է նորանոր փառավոր էջերով:

Այսօր կանգնած է նա իր գոյության երկրորդ 50-ամյակի շեմին՝ բաց ճակատով: Առջևում նրան սպասում են նոր գործեր, նոր խիզախումներ:

Գլուխդ բա՛րձր, հպա՛րտ քայլիր նրա շարքերում, սովետակա՛ն երկրի պիոներ:

Քեզ կանչում են լուսավոր հեռուները:

Քոնն է ապագան:

digitised by A.R.A.R.@

Սիրելի՛ պիոներներ:

Պատանի՛ բարեկամներ:

Սրտանց շնորհավորում եմ ձեզ՝ «Պիոներ» ամսագրի ընթերցողներին, պիոներական կազմակերպության 50-ամյա հոբելյանի առթիվ:

Ցանկանում եմ, ամենից առաջ, որ դուք մեծանաք որպես սովետական իսկական քաղաքացիներ, իսկական հայրենասերներ՝ պատրաստ խիզախելու, ստեղծագործելու, ռոմանտիկ նվիրումով ծառայելու կոմունիստական կուսակցության և ժողովրդի վեհ գործին, կոմունիզմի գործին:

Իսկ դրա համար հարկավոր է, ինչպես պատգամել է մեր մեծ առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինը՝ սովորե՛լ, սովորե՛լ և սովորե՛լ:

Ուրեմն, թո՛ղ ձեզ մշտապես կանչեն գիտության շողշողուն գագաթները:

Հենց այս խոհերով ու բարեմաղթություններով էլ, թույլ տվեք, այնքան պատանի և այնքան հասուն ձեր կազմակերպությանը՝ լենինյան պիոներիային, հղել կոմունիստական ջերմ ողջույն:

*ԱՆՏՈՆ ՔՈՉԻՆՅԱՆ*
*Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական Կոմիտեի առաջին քարտուղար*



# ԱԼ Վզկապը

ՆԱՆՄԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Շաղված է կարծես
Վզկապին կարմիր
Արևի ալվան շողերի գույնը:
Կարմիր վզկապը
Խարույկ է գարնան
Եվ կարմիր արյան
Հիշողություն է:
Կապել է մի օր
Այս ալ վզկապը
Քո զինվոր քեռին,
Իմ բանվոր պապը:
Ու կտակել են
Մեզ մեր հայրերը
Ալ վզկապի հետ
Այս վառ արևը:
Ու կտակել են
Ալ վզկապի հետ
Մեզ ավագները.
Երկինքը կապույտ
Եվ բացվող կարմիր
Ժամանակները:
Ու մեզ ժպտում են
Ինչպես որ կանաչ
Մեր վրանները,
Մեր անցած հիսուն
Եվ գալիք միլիոն
Կայարանները:

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ



593-72
6182-Ա.Հ.

digitised by A.R.A.R.@



Հիսուն տարի է, ինչ պիոներական կազմակերպությունը՝ հավատարիմ լենինյան պատգամներին, իր շարքերում կոփում ու դաստիարակում է մեր երկրի պատանի քաղաքացիներին, նրանց նախապատրաստելով մեծ կյանքի ու սխրանքների, ոգորումների ու հրաշագործությունների: Պիոներական կարմիր վզկապը հպարտորեն են կրել բոլոր նրանք, ովքեր խաղաղ շինարարության տարիներին մեր երկրի քաղաքներում ու ավաններում հիմնում էին գործարաններ ու ֆաբրիկաներ, հեռավոր տայգաներում բարձրացնում նոր քաղաքներ, կառուցում էին էլեկտրակայաններ, բացում բազում ճանապարհներ, սանձում բնության հզոր տարերքը: Սովետական հայրենիքին սպառնացող ճակատագրական վտանգի պահին այդ կազմակերպության սաներն էին դարձյալ, որ փինվորի շինել հագած, հերոսաբար մարտնչում էին անարգ թշնամու դեմ, պաշտպանելով մեր երկրի ազատությունը, սովետական մարդկանց ստեղծագործ կյանքն ու երջանկությունը:

Տասը տարի առաջ, պիոներիայի 40-ամյակի առթիվ, բարձր գնահատելով մեր մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակության գործում պիոներական կազմակերպության անփոխարինելի դերը, սովետական կառավարությունը նրան պարգևատրեց մեր հայրենիքի բարձրագույն պարգևով՝ Լենինի շքանշանով: Այդ մեծ պարգևը այսօր սիրով ու երախտագիտությամբ են կրում Սովետական Միության բազմազգ ժողովուրդների պիոներ զավակները:

Լենինյան պիոներական կազմակերպությունը, շարունակելով ու զարգացնելով իր հիսնամյա հրաշալի ավանդույթները, այսօր ևս իր սաներին դաստիարակում է բարձր գաղափարներով, սովորեցնում նրանց լինել շիտակ ու ազնիվ, սիրել հայրենիքը, միշտ որոնել նորը աշխատանքում, կյանքում, լինել արդար ու լավ ընկեր, հարգել մեծերին:

Մեծ հորիզոններ են բացվում մեր երկրի աճող սերնդի առաջ: Այդ նրանք են, որ վաղը նորանոր գործերով փառավորեն պիտի մեր հայրենիքը, սխրագործեն աշխատանքում ու գիտության մեջ, ակոսեն տիեզերական անհուն տարածությունները, լուծեն բնության առեղծվածները:

Հիրավի, հիանալի են այսօրվա մեր մատաղ սերնդի հեռանկարները: Նա ունի ամեն ինչ՝ իր բաղձանքներն իրականացնելու, իր նախընտրած ճանապարհով ընթանալու, իր ստեղծագործական բոլոր կարողությունները բացահայտելու և դրանք մարդկանց ու հայրենիքին նվիրաբերելու համար:

*ՆԱԳՈՒՇ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*
*Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ*



digitised by A.R.A.R.@

Սիրելի՛ պիոներներ:

Լրանում է մեծ Իլյիչի անունը կրող պիոներական կազմակերպության ստեղծման 50 տարին: Այդ նշանակում է, որ մեր հայրենիքի այսօրվա բնակչության ճնշող մեծամասնությունը իր ժամանակին եղել է պիոներ, այսինքն կրել է կարմիր փողկապ, տվել է պիոներական երդում, ապրել է պիոներական կյանքով: Այդ է պատճառը, որ ձեր տոնը՝ նաև մեր, մեծահասակներիս տոնն է, այն թանկ է ու հարազատ ինչպես ձեզ, այնպես էլ մեզ համար, այն ձեր այսօրն է, իսկ մեր՝ անցած մանկությունը:

Մեծ բանաստեղծ Իսահակյանի խոսքերով կարելի է ասել՝

...ու աշխարհին աչքիս
դառնում է երազ,
երեկ ես էի,
այսօր երեխաս...

Մարդու գիտակցական կյանքի յուրաքանչյուր օրը, երբ այն դառնում է հուշ, ստանում է յուրահատուկ քաղցրություն, սակայն պիոներական տարիքի օրերը ավելի քաղցր են ու թանկ, որովհետև այդ տարիներում է, որ մարդը ինչ-որ չափով սկսում է ինքնուրույն քայլել կյանքի ճանապարհով, և այդ սկիզբը թե որքան լավ կամ վատ է լինում, ունենում է բախտորոշ նշանակություն: Ուստի կցանկանայի, որ ձեր գիտակցական կյանքի սկիզբը և հետագա ամբողջ կյանքը շատ ավելի լավ լինի, քան մերն էր, որ ձեր անցնելիք ճանապարհը լինի լայն պողոտա, առանց փիգզագների և խորդուբորդությունների: Ձեր գլխի վրա արևը միշտ պայծառ լինի, երկինքը՝ պարզ, օդը՝ մաքուր: Կցանկանայի, որ մեր սիրելի պիոներական կազմակերպությունը լինի դպրոցների մանկավարժական կոլեկտիվների, ծնողների և ողջ հասարակության ուշադրության կենտրոնում, իսկ «Պիոներ» ամսագիրն ավելի լավ լուսաբանի ձեր կյանքը:

*ԲԱԴԱԼ ՄՈՒՐԱԴՅԱՆ*
*ՀՍՍՀ Մինիստրների սովետի նախագահ*

# ԿԱՐՄԻՐ ԴՐՈՇ

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

*Իմ հաղթակա՛ն ալ դրոշ,*
*Իմ կարմի՛ր արև,*
*Միշտ շողա՜ ու փողփողա*
*Մեր գլխի վերև:*
*Հովանու տակ քո խաղաղ*
*Քարերը ծաղկում,*
*Խոպանները փշապատ*
*Փոխվում են այգու:*
*Փարոսի պես բոցկլտում*
*Ճամփաներին մեր*
*Ու տանում ես մեզ դեպի*
*Լուսե հեռուներ:*
*Իմ հաղթակա՛ն ալ դրոշ,*
*Իմ կարմի՛ր արև,*
*Միշտ շողա՜ ու փողփողա*
*Մեր գլխի վերև:*

Նկ. ՋԱՆԻԿ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@

Լենինյան պիոներիան դարձավ 50 տարեկան:

Տասնամյակների միջով դո՛ւ, պատանի՛ լենինյան, քո խինդն ու պայծառ ժպիտն ես բերել, բերել ես, որ այսօր, քո հոբելյանին, կրկին շեփորը հնչի, թմբուկը թնդա՝ հաստատելու՝ երթը քո 50-ամյա:

Փառավոր կես դար ես ապրել դու արդեն: Պայքարել ես, հաղթել, աշխատել, կառուցել, օգնել ու գրոհել, ու միշտ քո ավագ եղբոր՝ կոմերիտականների կողքին: Դու միշտ ապացուցել ես, որ ապրում, սովորում ու պայքարում ես այնպես, ինչպես ավանդել է մեծ Լենինը, ինչպես սովորեցրել է կոմունիստական կուսակցությունը:

Լինել պիոներ մեծ պատիվ է քեզ համար: Հիշի՛ր, որ պիոներ նշանակում է ամեն ինչում և ամենուր առաջինը լինել: Քայլի՛ր առջևի՛ց, հաղթահարի՛ր բոլոր դժվարությունները, սրբորեն պահպանի՛ր, հարստացրո՛ւ պիոներական փառավոր 50-ամյա ավանդույթները: Միշտ հիշի՛ր, որ քեզ փոխարինելու են գալիս հոկտեմբերիկները: Նրանք են տանելու քո կազմակերպության ալ դրոշը: Իսկ դու կոփվի՛ր, ամրացի՛ր հոգով, խիզախի՛ր ամենուր, որ շուտով ընդունես սերունդների հերթափոխը, բարձր պահես կոմերիտմիության փառապանծ դրոշը:

Ձեր պայծառ տոնի առթիվ, այսօր ձեզ շնորհավորում է Հայաստանի ողջ կոմերիտմիությունը: Այսուհետև ևս միշտ բա՛րձր պահեք Սովետական Միության պիոներների անունը: Թո՛ղ ձեր նոր 50-ամյակը նոր գործերով, նոր սխրանքներով ու մեծ երջանկությամբ լսկսվի:

*ԼԵՎՈՆ ՍԱՀԱԿՅԱՆ*
*ՀԼԿԵՄ Կենտկոմի*
*առաջին քարտուղար*

# ՊԻՈՆԵՐԻԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ

1957 թ. դեկտեմբերին հրապարակվեցին պիոների հանդիսավոր խոստման տեքստը և պիոներական օրենքները:

**Սովետական Միության պիոների հանդիսավոր խոստումը**

«Ես (ազգանուն, անուն), ընդունվելով Վլադիմիր Իլյիչ Լենինի անվան Համամիութենական պիոներական կազմակերպության շարքերը, իմ ընկերների առջև հանդիսավոր խոսք եմ տալիս՝

Ջերմորեն սիրել իմ հայրենիքը:



Ապրել, սովորել ու պայքարել այնպես, ինչպես ավանդել է մեծ Լենինը, ինչպես սովորեցնում է կոմունիստական կուսակցությունը:

Միշտ կատարել Սովետական Միության պիոների օրենքները»:

**Սովետական Միության պիոների օրենքները**

1. Պիոները նվիրված է հայրենիքին, կուսակցությանը, կոմունիզմի գործին:
2. Պիոները պատրաստվում է դառնալ կոմերիտական:
3. Պիոները ձգտում է հավասարվել աշխատանքի և պայքարի հերոսներին:
4. Պիոները հարգում է զոհված մարտիկների հիշատակը և պատրաստվում է դառնալ հայրենիքի պաշտպան:
5. Պիոները համառ է ուսման մեջ, աշխատանքում և սպորտում:
6. Պիոները ազնիվ ու հավատարիմ ընկեր է, միշտ համարձակորեն պաշտպանում է ճշմարտությունը:
7. Պիոները հոկտեմբերիկների ընկերն է ու ղեկավարը:
8. Պիոները բոլոր երկրների պիոներների և աշխատավորների երեխաների բարեկամն է:



digitised by A.R.A.R.@

Մի փոքրիկ քաղաք, մի գիծ Տիկո, այսինքըն՝ Տիգրան, որի համար ավելի հեշտ էր պատուհանից մտնել դասարան, քան դռնից, թեև դասարանը երկրորդ հարկում էր: Ջրհորդանից բռնում էր ու կատվի պես մագլցում. միայն թե զարմացնի, միայն թե տարբերվի, ուզո՞ւմ եք գլխիվայր կքայլի, և քայլում էր... ձեռքերի վրա:

— Տիգրա՛ն,— կարգի էր հրավիրում ուսուցչուհի ընկեր Արուսյակը, որ Տիկոյին առաջին դասարանից գիտեր և հասցրել էր չորրորդ դասարան, իսկ տղան մնացել էր նույն գիժը:

Երևի աշխարհում ոչ ոք այնպես «Տիգրան» չէր ասում, ինչպես ընկեր Արուսյակը՝ զգաստացնող, միաժամանակ մտերմիկ ու սիրալիր.

— Տիգրա՛ն..

Այդպես դիմում են մեծերին, և հոլի պես պտըտվող Տիկոն մի քանի րոպե իրեն կարգին էր պահում:

Անհավատալի տատանումներ ունեին նրա գնա-



ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

հատականները. պատահում էր նա մարզաժամից էլ «2» էր ստանում, թվաբանությունից՝ մի օր «5», հինգ օր՝ «2» կամ հազիվ «3», բայց եթե ոտանավորն անգիր սովորած էր լինում, արտասանում էր այնպես կրակոտ, ամեն բառը ապրելով, ուղղակի դերասան: Մի անգամ քիչ մնաց դասարանում բոլորին լացացներ: Ուսուցչուհին իսկ անչափ հուզվել էր: Տիկոն արտասանում էր «Փոքրիկ թմբկահարը» ոտանավորը:

Նա ոտքի էր կանգնել և մի տեսակ երազուն նայում էր հեռուն, ասես այնտեղ տեսնում էր փոքրիկ թմբկահարին: Փոքրիկ թմբկահարը գնդակների տարափի տակ զինվորներին տանում էր գրոհի: Հրամանատարն ամեն կերպ ուզում էր ետ պահել նրան, բայց կարո՞ղ էր... Սուլում էին գնդակները, ուռան որոտում էր ականջներում, կողքին ընկած զինվորի հառաչանքն էր խլանում գրոհող վաշտի կանչերի մեջ:

**Քայլում է տղան, թմբկահար տղան,**
**Հեռու և մոտիկ արկեր են պայթում:**


Հայաստանի պատկոմական կազմակերպության ղեկավար Ստյոպա Մանուկյանը և Երևանի պատկոմական ղեկավար շտաբի պետ Արտո Բզնունին 1922 թ.:

**Երկրորդ գնդակը խոցում է նրան,**
**Աչքերի առաջ մշուշ է պատում...**

Զինվորները հասնում են բարձունքին... առանց թմբկահարի:

Տիկոյի ձայնը դողում է, աչքերը լցվում են, դասարանում այս ու այն նստարանից հեծկլտոցներ են լսվում, ուսուցչուհին ոչ այն է զարմացած, ոչ այն է հիացքով, կանգնել է զգաստ:

Լռություն, հետո քչփչոց, Տիկոյի հասցեին հիացական խոսքեր:

Դասամիջոցին ասես քիչ առաջվա Տիգրանը չէ, էլի պտտվում է հոլը:

Մեկ էլ դպրոցի պիոներ-ջոկատավարը մտավ դասարան և խնդրեց, որ Տիգրանը դասերից հետո մնա:

Տիկոն մի րոպե մտածեց. ի՞նչ անկարգություն է արել այսօր, և չիմացավ, ո՞ր մեկի վրա կանգ առնի, բոլորն էլ համարեց սովորական բաներ:

— Տիգրա՛ն, որտե՞ղ է ուշադրությունդ...

— Դասերից հետո...

Տիգրանն այդ օրը տուն գնաց պիոներական թմբուկով: Տանը նա թմբուկն առավ, գնաց այգու խորքը. նայեց չորս կողմն ու կամացուկ սկսեց: Ռիթմն ինքն իրեն եկավ. դռների, նստարանների, պատուհանների, պահածոյի դատարկ տուփերի վրա այնքա՛ն էր փորձել... Հիմա իսկական թմբուկ էր ձեռքին, կստացվեր ու կստացվեր... Եվ իրոք որոտաց թմբուկը, ու այսպես բարձրաձայն թմբկահարելով, Տիկոն քայլեց դեպի տուն. դուրս եկան քույրերն ու եղբայրները, վազելով եկան ընդառաջ, շարք կանգնեցին, համարյա մի ամբողջ ջոկատ,



digitised by A.R.A.R.@




*Պիոներական մամուլը 20-ական թվականներին։*

դուրս եկան հայրն ու մայրը, նախ իրար նայեցին, ժպտացին։ Տիկոն սրտապնդվեց, ուրեմն կարելի է։ Բակ խուժեցին հարևանի երեխաները, եկա՛ն, միացա՛ն...

— Գժոն է,— ասացին մարդիկ։ Իրենք էլ փոքր լինեին, կգային նրանց հետ շարք կանգնելու...

Դպրոցում ջոկատավարը լսեց նրան, ասաց.

— Հոկտեմբերյան հեղափոխության ութերորդ տարեդարձի տոնակատարության ժամանակ դու կառաջնորդես ոչ միայն մեր պիոներներին, այլև մեր դպրոցի 12 թմբկահարներին...

Ի՜նչ պատիվ էր դա... միայն թե շուտ գար տարեդարձի օրը։

Հիմա նա ուրիշ կերպ էր մտնում դասարան, ուրիշ կերպ էր դուրս գալիս։ Բոլորը մոռացել էին նրա գիժ լինելը, որովհետև ինքն էլ վերջ էր տվել գժություններին։

Վերջապես, 1925 թվականի նոյեմբերի 7-ի օրն է։ Փոքրիկ քաղաքը վարարած գետի նման դուրս էր եկել ափերից։ Սկսվեց շքերթը։ Անցնում էին պիոներները. 12 թմբկահարների առջևից քայլում էր Տիգրանը։ Նրա աջ և ձախ կողմերին՝ շեփորահարներն են։ Նախ մենակ էր խփում Տիգրանը, հետո 12 թմբկահարներն ու շեփորահարները միացան նրան. հրաշալի էր։ Շարքերը ուղղվում, ձգվում, շարժվում էին համաչափ ու խրոխտ։

Հետո ի՞նչ եղավ։

Անցան շատ տարիներ։ Հայրենական պատերազմի հերոս Տիգրան Մարգարյանի թմբուկը հիմա դրված է մեր արդեն ոչ փոքրիկ քաղաքի թանգարանում։

## ՊԻՈՆԵՐԻԱՅԻ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ

*1924*

15 ՍԵՊՏԵՄԲԵՐԻ.— Երևանում տեղի ունեցավ Հայաստանի պիոներների հավաք։ Պատգամավորներ կային հանրապետության բոլոր պիոներական ջոկատներից։ Շատ ջոկատներ հավաքի էին եկել ոտքով, անցնելով 150—200 *կմ* ճանապարհ։



*ԳՐԻՇԱ ՀԱԿՈԲՅԱՆ*

*1930*

15 ՍԵՊՏԵՄԲԵՐԻ.— Անդրկովկասում ստեղծվում էին առաջին կոլտնտեսությունները։ Կուլակները ամեն կերպ խանգարում էին նոր գյուղի ծննդին։ Նրանք հրդեհում էին կոլտնտեսության պահեստները, մորթում անասունները, հաշվեհարդար տեսնում գյուղի ակտիվ կառուցողների հետ։ Այդ օրերին Գյանջայում (այժմ՝ Կիրովաբադ) կուլակները սպանեցին ակտիվ պիոներ Գրիշա Հակոբյանին։

digitised by A.R.A.R.@

# ՊԱՅԾԱՌ ՀԻՇԱՏԱԿՆԵՐՈՎ ԼԵՑՈՒՆ ՏԱՐԻՆԵՐ



Թանկագի՛ն պատանի բարեկամներ:

Ջերմորեն ողջունում եմ ձեր կազմակերպության՝ Սովետական Միության պիոներիայի հիսնամյա հոբելյանը:

Ասացի «ձեր», բայց պիոներիան միայն ձերը չի, մերն էլ է ու բոլոր նրանցը, ովքեր հիմա արդեն 60—65 տարեկան են ու եղել են պիոներ կազմակերպության հիմնադիրները, նրա առաջին անդամները:

Ես նույնպես, սիրով ու հպարտությամբ կրել եմ պիոներական փողկապը, անհամբեր հետաքրքրությամբ սպասել մեր հավաքույթներին: Այն ժամանակ ես ապրում էի Ամիրյան փողոցում և պիոներական տունն էլ գտնվում էր այժմյան Լենինի հրապարակի տեղը: «Պիոներ-պալատ» չէին ասում, այլ «Պիոներ-տուն», ինչպե՞ս «պալատ» անվանեինք այն հին, փայտե ճռնչացող սանդուղքներով, թեև երկհարկանի, բայց հազիվ ոտքի վրա կանգնող շենքը... Բայց ի՜նչ հարուստ էին այդ անշուք շենքում անցկացրած օրերը, ինչպիսի՜ ջանասիրությամբ էի հաճախում նրա երգեցիկ խմբի պարապմունքներին, որը ղեկավարում էր անվանի կոմպոզիտոր Ռոմանոս Մելիքյանը: Ես մինչև հիմա էլ զարմանում եմ, թե ինչպե՞ս էին ինձ, որ չեմ փայլում ձայնով ու լսողությամբ, ընդունել այնտեղ: Երևի այնքան բուռն էր իմ սերն ու ոգևորությունը դեպի այդ խումբը, որ նշանավոր կոմպոզիտորի «ձեռքը չգնաց» ինձ այդ բավականությունից զրկել... Տեսնել էր հարկավոր, թե երջանկության ի՜նչ զգացումներով էինք մենք հավաքվում մեր սիրելի պիոներ-տան պատերի մոտ և արևի տակ այրվելով ժամերով սպասում մեքենայի՝ ճամբար գնալու համար: Մեքենան էլ ի՜նչ մեքենա՝ խարխլված բեռնակիր... Ես իմ կյանքում շատ եմ ճամփորդել՝ հարմարավետ գնացքներով ու նավերով, նորափայլ ինքնաթիռներով, գնացել եմ շատ հեռու ու շքեղ երկրներ, բայց ոչ մի անգամ այդպես խտացած ու շոշափելի չեմ ապրել հրճվանքը, ինչպես այդ խարխլված բեռնակրի թափքին՝ երգ ու դղիրդով դեպի Ծաղկաձոր ընթանալիս, ոչ մի վայր այնպիսի կարոտով ու սրտատրոփ ոտք չեմ դրել, ինչպես Ծաղկաձորի վրանածածկ հովիտը... Իսկ հապա երեկոյի ցրտությունը իր ճարճատյունով տաքացնող խարույկը, փողային նվագախմբի սարից-սար ձգվող զրինգը, ու նաև մեր անխառն գոռովն ու պատրաստակամությունը՝ օգնելու ֆաշիստական բանտում տառապող Դիմիտրովին, իսպանական պարտիզաններին...

Ուրիշ շատ ու շատ այսպիսի պայծառ հիշատակներ են պարգևել ինձ պիոներական տարիները: Ու դրա համար ես առանձին սիրով ու ջերմությամբ եմ շնորհավորում մեր սիրելի պիոներիայի հիսնամյակը, և մաղթում, որ միշտ այդպես՝ տղաներով ու աղջիկներով խլրտացող, աշխույժ ու եռանդուն մնա մեր հոբելյարը, դառնա 100—150 և ավելի տարեկան, առավել բարի ու բարեկարգ ժամանակներում գործի, բայց միշտ պահի իր հիմնադրման, իր «ջահել» տարիների կրակն ու ոգևորությունը, մարդկության պայծառ գաղափարների հանդեպ՝ իր հավատն ու նվիրվածությունը:

ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

Ծաղկաձորում, 1927 թ.





digitised by A.R.A.R.@



# ԴԱՍԵՐԻ ՀՈԳՍԻՆ ԱՎԵԼԱՑԱՎ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹՅԱՆ ՀՈԳՍԸ

Իմ սերնդի մանկությունը կարմիր փողկապով էր: Եվ մանկությանըս ամենալավ հուշերը կապված են պիոներական խարույկների, ճամբարային լուսավոր առավոտների, Ծաղկաձորյան անտառների հետ:

Գրական առաջին քայլերս նույնպես կապված են պիոներական աշխարհի, պիոներական թերթի՝ «Պիոներ կանչ»-ի հետ:

Հինգերորդ դասարանի աշակերտ էի: Ընկել էի ու ոտքս վնասել: Պառկած էի տանը, իսկ դրսում գարուն էր, արև... Ընկերներիս զվարթ աղմուկը հասնում էր ինձ:

Շատ էի կարոտում գարունը, խաղերը:

Եվ այդպես պառկած՝ գարնան մասին մի ոտանավոր գրեցի:

Ընկերներս խորհուրդ տվին ուղարկել «Պիոներ կանչ»-ին:

Ուղարկեցի:

Օրեր էին անցել, լավացել էի, գնում էի դասի:

Եվ ահա մի օր դասարան է մտնում մեր մաթեմատիկայի ուսուցիչ Սուրեն Մարտիրոսյանը և ինձ է պարզում «Պիոներ կանչ»-ը:

— Դո՞ւ ես գրել այս ոտանավորը...

Նայում եմ ու չեմ հավատում աչքերիս.

Իմ ոտանավորն է ու վրան էլ գրված «Վահագն Դավթյան»:

Բայց ինչո՞ւ «Վահագն», ես մինչև այդ գրում էի Վահագ»...

Բանից պարզվեց, որ սեփական անունս սխալ եմ գրելիս եղել...

Եվ ահա այդ օրվանից անվանս վրա ավելացավ մի «Ն», ու դասերիս հոգսին ավելացավ բանաստեղծության հոգսը...

ՎԱՀԱԳՆ ԴԱՎԹՅԱՆ

1927 թ., պիոներական ճամբարի փոխադրական միջոցները:



## ՊԻՈՆԵՐԻԱՅԻ ★ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ

1935

4 ԴԵԿՏԵՄԲԵՐԻ.— Տաջիկ պիոներուհի Մամլաքաթ Նախագովան լավ ուսման, կոլտնտեսությունում բամբակագործության զարգացմանը մատուցած օգնության համար՝ պարգևատրվեց Լենինի շքանշանով: Նույն օրը, բամբակի բարձր բերք ստանալու համար՝ «Պատվո նշան» շքանշան ստացան պիոներներ Իլան Կադիրովը և Հավախան Աթակոզովը:

1941

22 ՀՈՒՆԻՍԻ.— Սկսվեց Հայրենական մեծ պատերազմը ֆաշիստական Գերմանիայի դեմ: Առաջին իսկ օրվանից հայրենիքը պաշտպանելու ելած ժողովրդի շարքերում կային միլիոնավոր պիոներներ:

Չնայած մեծ դժվարություններին, պիոներները շարունակում էին լավ սովորել, մեծահասակներին օգնում էին ռազմաճակատում և թիկունքում՝ ուժեղ ու խարդախ թշնամուն հաղթելու համար: Քաղաքներում նրանք հետևում էին լուսաքողարկմանը, ստեղծում սանիտարական ջոկատներ, խնամում վիրավորներին: Գյուղական վայրերում պիոներները մասնակցում էին բերքահավաքին, հսկում բերքը: Լայն տարածում գտավ թիմուրական շարժումը: Շատ պիոներներ մարտնչում էին պարտիզանական ջոկատներում:

digitised by A.R.A.R.@

# ԵՂԲԱՅՐ ՓՈՂԿԱՊՆԵՐԸ

Ն. ՌԱԿՈՎՍԿԻ



1. Ծրարը հասցեագրված է. «Հավաննա, պատանի ապըստամբների միություն...» Անշուշտ դուք հասկացաք, թե ուր է գնալու այս նամակը, Կուբա: Ծրարը կբացի կարմիր բերետով և իրենց դրոշի պես կապույտ-սպիտակ-կարմիր փողկապով պիոները:

2. Իսկ այս երեխաները կրում են երկնքի պես կապույտ փողկապներ: Կապույտ գույնը խաղաղության և աշխատանքի խորհրդանիշն է: Բանվորները կապույտ վերնաշապիկներ են հագնում: Դրա համար էլ գերմանական պիոներները՝ Գերմանական Դեմոկրատական Հանրապետության պատանի թելմանականները, իրենց փողկապի համար ընտրել են կապույտ գույնը: Պատանի թելմանականների նշանաբանն է. «Խաղաղության ու սոցիալիզմի պայքարին եղիր պատրա՛ստ»: Իսկ ինչո՞ւ են նրանց թելմանականներ անվանում:

Էռնեստ Թելմանը գերմանական բանվորների և կոմունիստների առաջնորդն էր: Ֆաշիստները հետապնդեցին գերմանացի առաջնորդին, բռնեցին և տանջամահ արին: Պատանի պիոներները հավերժացրել են նրա հիշատակը: «Էռնեստ Թելման» անունով նավ է լողում ծովերում, որը պատրաստված է պիոներների միջոցներով: Թելմանականները պահպանում են նաև զոհված կոմունիստների հուշարձանները, խաղաղության կողմնակիցների ստորագրություններ են հավաքում:

3. Այդ ո՞վ է թաքնվել անկյունում: Ո՞վ է թխավուն ձեռքերով գունագեղ ամսագրեր կրծքին սեղմել և սևուկ աչքերով հետևում ոստիկանին:

Դա մանկական ամսագրեր վաճառող, իտալացի պիոներն է: Մի բանվոր աչքով արեց նրան. «Դուրս արի, ոստիկանը ետ դարձավ»: Մանչուկը վազում է հրապարակով. «Գնեցեք աշխարհի ամենաուրախ և ամենալավ «Պիոներ» ամսագիրը»: Հաշվելով դրամը, տղան շարունակում է վազել: Վտիտ, մաշված վերնաշապիկով վաճառողին չնչին գումար է հասնում՝ ընդամենը երկու-երեք լիրա: Սակայն փոքրիկ հայրենասերը գիտե, որ Իտալիայի պիոներական կազմակերպությունը գործում է այդ ամսագրերից ստացված եկամուտով:

Երեկոյան սևաչյա ժրաջան տղան գործարար տեսքով հանձնում է դրամը. «Հաշվե՛ք»: Հիվանդ Ջանիի դեղորայքի համար արդյո՞ք կբավարարի: Եվ դեռ հարկավոր է փողկապներ ու դրոշի համար ծայրերիզներ գնել:

4. Այդ ո՞ւմ ուրախ ձայներն են հնչում լեհական դպրոցների տողաններում, փողոցներում, հրապարակներում: Դա ասպետ-խարցերներն են. այդպես են անվանում լեհական պիոներներին, որ դուրս են եկել արշավի: Իսկ ինչպիսի՞ փողկապներ են կրում նրանք: Բազմազան՝ կապույտ, կանաչ, կարմիր և այլն: Յուրաքանչյուր ջոկատ ունի իր փողկապի գույնը: Իսկ նրանց կրծքանշանի վրա կա երեք տառ, որ նշանակում է. «Հայրենիք», «Գիտություն», «Պատիվ»:

Լեհական խարցերները գիտակ ճանապարհորդներ են: Նրանք մասնակցում են պեղումներին, ուսումնասիրում են իրենց հայրենիքի անցյալը: Իսկ վերջերս նրանք հավաքել են Լենինի՝ Լեհաստանում ապրած տարիներին վերաբերող բազմաթիվ հուշագրություններ և լուսանկարներ:

5. Միջերկրական ծովի կապույտ ալիքները ողողում են կղզու գեղատեսիլ զմրուխտյա ափերը: Դա Կիպրոսն է: Կիպրոսը աշխարհի երիտասարդ և փոքր պետություններից մեկն է. նա ունի յոթ հարյուր հազար բնակիչ: Սակայն, ի՜նչ քաջարի ու հպարտ ժողովուրդ է: Շատ են մարտնչել կիպրոսցիները իրենց անկախության համար: Իսկ երբ հաղթեցին, քաղաքների և գյուղերի փողոցներում երևացին կանաչ բերետներով, կանաչ փողկապներով և կանաչ դրոշներով երեխաների խմբեր: Դրանք Կիպրոսի առաջին պիոներներն էին: Փոքրիկ, քաջարի Կիպրոսը քայքայվել էր երկարատև պատերազմից, կարիքներից, զրկանքներից: Սակայն



digitised by A.R.A.R.@

նրա զավակները ապագայի համար իսկական մարտնչողներ են: Պիոներական ջոկատները կրում են Մանոլիս Գլեզոսի և Յուրի Գագարինի անունները... Կանաչ փողկապավորները որբանոցների, գործազուրկների տան հաճախակի հյուրերն են: Ժողովուրդը նրանց անվանում է «Շտապ օգնություն»:

6. Փարիզյան կայարան: Մի խումբ ֆրանսիացի տղաներ ըզգուշությամբ վագոնից դուրս են բերում սայլակը: Նրա վրա նըստած է մի գունատ պատանի: Ովքե՞ր են այդ տղաները: Ֆրանսիական անվեհեր պիոներներ: Նրանք Փարիզ էին բերել մի կաթվածահար պատանու: Նա դեռ երբեք չէր եղել Փարիզում: Քաջարի պիոներները սիրով օգնում են թույլերին: Թերթում կարդացին, որ փոքրիկ Ժանին սպառնում է կուրանալու վտանգը: Եվ շուտով փոստատարը Ժանի վիրահատության համար նրա ծնողներին դրամ է հանձնում:

7. Իսպանիայի քաղաքների և գյուղերի ապահով տեղերում պահվում են պիլոտկաներ: Տարիներ շարունակ Իսպանիան սառապում է ֆաշիստական գեներալ Ֆրանկոյի լծի տակ: Սակայն պիոներական պիլոտկան և փողկապը իսպանացի պիոներները պահպանում են սրբորեն:

Երբ Իսպանիան ազատագրվի, կյանք կառնեն նաև փոքրիկ պիլոտկան և փողկապը, ինչպես լինում է հեքիաթներում:

Աշխարհի բազմաթիվ երկրներում ապրում են ձեր պիոներ ընկերները:

Այժմ մեր մոլորակի վրա քայլում է կանաչ, կապույտ, դեղին, երկնագույն և կարմիր փողկապներով արի, բարի և աշխատասեր պիոներիան...

*Թարգմ. ԱՍՅԱ ՍԱՀԱԿՅԱՆԻ*



## ԵՐԱԽՏԱԳԻՏՈՒԹՅԱՆ ԽՈՍՔ

«Լենինի գործի պայքարին մի՛շտ պատրաստ»: Տարիներ առաջ այս սրբազան երդումով ես էլ դարձա պիոներ ու կրեցի կարմիր փողկապ և այդ նշանաբանով էլ առաջնորդվեցի իմ ամբողջ կյանքում: Եթե ինձ հարցնեն, թե իմ կյանքի ո՞ր շրջանը կուզեի վերապրել, ապա առանց տատանվելու կպատասխանեի՝ պիոներական: Ընդամենը մի քանի տարի, սակայն որքա՜ն հագեցած և որքան խորհրդավորություններով լի տարիներ: Այդ շրջանում է, չէ՞, երբ շարունակ երազում ես դառնալ օդաչու, սկսում ես հետևել նրանց կյանքին, թերթերից լուսանկարներ ես կտրում և փակցնում ալբոմիդ մեջ, նրանց նվիրված գրքեր ես կարդում: Կամ երազում ես դառնալ նավապետ, ուսուցիչ, գիտնական, և վերջապես՝ արտիստ...

Հապա ջոկատի հավաքույթնե՜րը, ճամբարներն ու խարույկնե՜րը:

Մթնշաղին, երկինք խոյացող բոցերի մեջ, տեսնում ես, չէ՞, քեզ որպես հերոս, մեծ մարդ՝ կյանքդ հայրենիքիդ կամ ընկերոջդ համար չխընայող...

Ահա այս շրջանում էլ, ես միայն մի ձգտում, մի իղձ ունեի՝ դառնալ դերասանուհի: Իհարկե, այն ժամանակ իմ պատկերացման մեջ այդ ձըգտումը չէր կրում այն մեծ հասարակական իմաստը, ինչպես այսօր: Այսօր, ես գիտեմ, որ ինձ նվիրելով արվեստին՝ նվիրում եմ ժողովրդին, նրա գաղափարական, գեղագիտական դաստիարակությանը և կոմունիստական հասարակարգի կառուցման վեհ գործին:

Երախտագիտությամբ եմ հիշում պիոներ-պալատը, որի սանն եմ եղել (մասնակցել եմ թատերական և այլ խմբակներին), իմ բոլոր ջոկատավարներին և ուսուցիչներին, որոնք օգնել են ինձ, խրախուսել՝ ավելի ամրապնդել սերը դեպի արվեստը: Սիրելի՛ պիոներներ, սիրեցե՛ք արվեստը, թատրոնը, դա կհարստացնի, կազնվացնի ձեր հոգին, կօգնի ձեր որոնումների ընթացքում գտնելու ինքներդ ձեզ, ձեր բարձրագույն իդեալը, ձեր փնտրած գեղեցիկը:

*ՄԵՏԱՔՍՅԱ ՍԻՄՈՆՅԱՆ*
*ՀՍՍՀ ժողովրդական դերասանուհի,*
*ՍՍՀՄ պետական մրցանակի դափնեկիր*

## ՊԻՈՆԵՐԻԱՅԻ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ ★

*1942*

ՆՈՅԵՄԲԵՐ.— Ամբողջ երկրում անցկացվեց «Պիոները՝ ռազմաճակատին» համամիութենական պիոներական կիրակնօրյակ: Երեխաները փայտ էին ջարդում դըպրոցի համար, զարդարում հոսպիտալների հիվանդասենյակները, նվերներ պատրաստում վիրավորների համար, մետաղի ջարդոն հավաքում, զինվորների ընտանիքներին օգնում ձմռանը նախապատրաստվելու:

digitised by A.R.A.R.@



# ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ԱՇԽԱՐՀ

Եթե դուք Նալբանդյան փողոցի կողմից մոտենաք Ղուկաս Ղուկասյանի անվան պիոներների և դպրոցականների պալատին, ապա ձախից, դարբասի ետևում կնկատեք հինգ լուսամուտ: Մոտեցեք և նայեք ներս: Դուք կտեսնեք մի կախարդական աշխարհ: Այդ կախարդական աշխարհը ես առաջին անգամ տեսա սրանից 35 տարի առաջ, երբ վեցերորդ դասարանն ավարտելուց անմիջապես հետո իմ դասընկերներ Գագիկի և Վռամի հետ դուրս էինք եկել փողոց՝ հետախուզելու քաղաքի երկու նշանավոր կառույցները, Պողոս-Պետրոս եկեղեցու տեղում բարձրացող կինոթատրոնի շենքը, որը հետագայում, «Մոսկվա» անունը ստացավ, և հին բոլշևիկների շենքը: Հաջողությամբ շրջանցելով պահակակետը և հաղթահարելով տախտակամածների խիտ անտառը, մենք թափանցեցինք երկրորդ հարկը և ներխուժեցինք դահլիճը: Դուք, բարեկամնե՛ր, դեռ մանկուց եք տեսել շուքով զարդարված խանութներ, սրճարաններ, շենքեր, փողոցներ, հրապարակներ, և սակայն ամեն անգամ հիանում եք նրանցով: Մենք այն տեսնում էինք առաջին անգամ: Տպավորությունը ցնցող էր, անմոռաց:

Կեսօր էր, արևի կիզիչ ճառագայթները անխնա այրում էին մեր ծոծրակները, մենք քայլում էինք բոլորովին նոր ասֆալտապատած Նալբանդյան փողոցով վեր, դեպի հին բոլշևիկների շենքը: Մենք դեռ չգիտեինք, որ հին կուսակցականները արդեն որոշել էին իրենց համար կառուցվող շենքը նվիրել Երևան քաղաքի պիոներներին, և ուրեմն դուք կարող եք պատկերացնել մեր զարմանքը, երբ տեսանք, թե ինչպես տակավին կիսավարտ շենքի դռնից դուրս են գալիս կապույտ գոգնոցներ հագած, կարմիր վզկապավոր մեզ հասակակից տղաներ, ոչ թե վարանելով, ոչ թե թաքնվելով պահակից, այլ որպես լիիրավ տերեր: Երկար չտևեց խոսակցությունը: Տղաները մեզ պատվիրեցին սպասել, մինչև գա ընկեր Մանասյան Սամվելը, և եթե մենք գիտենք նկարել և լավ ենք սովորում դպրոցում, ապա մեզ ևս անպայման կընդունեն պիոներների պալատի քանդակագործական խմբակը:

Չգիտեի, որ այդ օրը ես ծանոթանում էի իմ ապագա արվեստակից ընկերներ Արշամ Շահինյանի, Ռաֆայել Եկմալյանի, Երեմ Վարդանյանի, Սերգեյ Բաղդասարյանի, Սիլվա Մնացականյանի, Մերուժան Հարությունյանի, Գրիգոր Աղասյանի, Արմեն Վարդանյանի, Հովհաննես Հովհաննիսյանի և էլի շատ ուրիշների հետ: Չգիտեի, որ քանդակագործ եմ դառնալու:

Ամառ էր, շոգ, բաց էին արվեստանոցի դուռն ու լուսամուտները: Մեր առաջ ևս լայն բացվում էին մի նոր, կախարդական աշխարհի հեռուները:

Մենք կանգնած էինք այդ նոր աշխարհի շեմին:

ՂՈՒԿԱՍ ՋՈՒԲԱՐՅԱՆ



Շքերթ Աբովյան փողոցում, 1930 թ.։

## ★ ՊԻՈՆԵՐԻԱՅԻ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ



Տուլայի մարզի Լիխվին քաղաքի հրապարակում թաղված է հերոս պիոներ Սաշա Չեկալինը: Նա մարտնչել է պարտիզանական ջոկատում: Մարտական գործողություններից մեկի ժամանակ, երբ Սաշան գնացք էր պայթեցնում, ֆաշիստները բռնեցին նրան: Մահվանից առաջ հերոս պիոները բացականչեց.

— Է՜հ, սողուննե՛ր: Բոլորիս չե՞ք կախի: Մենք շա՜տ ենք:

Հետո նա երգեց «Ինտերնացիոնալ»:

Մեր հայրենիքը բարձր գնահատեց Սաշա Չեկալինի քաջագործությունը և հետմահու նրան շնորհեց Սովետական Միության հերոսի կոչում:

digitised by A.R.A.R.@

# Մենք երեխաներ չէինք

(Հատված հուշերից)

ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ

Մութ գիշեր էր։ Մեր սայլը կանգնեց Սարդարապատի պարիսպների մոտ։ Դարբասները բաց էին, բայց մենք ներս չմըտանք։

— Խոլերա կա,— ասաց սայլորդը,— ներս մտնել չի կարելի։

Եվ մենք պառկեցինք խոտի դեզերից մեկի մոտ։ Լուռ էր շրջակայքը։ Գյուղում ճրագներ չէին երևում։ Տասնմեկ-տասներկու տարեկան մանուկներ էինք՝ կարճ շալվարներով, լայնեզր գլխարկներով, կաշվե գոտիներով, որոնց ճարմանդների վրա Փոքր և Մեծ Մասիսներ կային։ Պառկել էինք դեզի տակ ու նայում էինք աստղաշատ երկընքին։ Այնքան վառ էին աստղերը և այնքան շատ, որ ասեղ գցելու տեղ չկար։ Անասելի ուժով և մաքրությամբ հմայում էր մեզ Հարդագողի ճանապարհը և կարծես նրա միջից մեզ էր հասնում մեր Նազիկի ձայնը։ Նա երգում էր մեզ համար, երգում էր, որ մենք հանգիստ քնեինք, խաղաղ քնեինք։ Կապուտաչյա, գեղեցիկ աղջիկ էր Նազիկը։ Ո՞վ էր նա մեզ համար՝ չգիտեմ, բայց նա էր մեզ բերել Սարդարապատ՝ փշատ, կոութ_ հավաքելու գյուղացիների համար։ Փշատի ծառեր շատ կային այնտեղ։ Հավաքում էինք փշատը, լցնում պարկերը, տանում գյուղ և բաժանում գյուղացիներին։ Գյուղացիները ուրախանում էին, մեզ էլ բաժին տալիս փշատից։

— Մեղք են երեխաները։ Տարեք իրենց տները։ Ինչո՞ւ եք այդպես չարչարում,—ասում էին նրանց։

— Նրանք երեխաներ չեն,— բացատրում էր Նազիկը,— նրանք պատկոմներ են։ Սրանք ձեզ օգնելու համար են եկել այստեղ։

Մենք պատկոմներ էինք։ Մենք երեխաներ չէինք։

Պառկած էինք դեզի տակ։ Աղջիկներն ու փոքրիկները սայլի վրա էին։ Սայլորդը կապել էր եզները սայլից և ինքն էլ պառկել մեր կողքին։ Սայլի վրա էին նաև մեր մարզափայտերը, թմբուկները։ Սայլորդը կրակ էր արել։

— Բորենիներ կան այս տեղերում։ Նրանք միայն կրակից են վախենում։ Դուք հանգիստ քնեք, ես արթուն կմնամ,— ասաց սայլորդը։

Քնել էին, բայց իմ քունը չէր տանում։ Ինձ թվում էր, որ եթե մի քիչ էլ անքուն մնամ, աստղերը կիջնեն և ես ձեռքս կտանեմ Հարդագողի ճանապարհի միջով և ես, համարյա թե, արդեն լսում էի տատիս ձայնը, որ ասում էր.

— Ամեն մարդ, որդի՛, իր աստղն ունի երկնքում, ա՛յ, իմ աստղն այն փոքրիկ աստղն է, քոնն՝ այն մեծ, լուսավոր աստղը։ Հազար տարի դեռ վառ կմնա քո աստղը։ Իմ աստղը կընկնի մի օր և ես երկինք կգնամ։

— Քնի՛ր, քնի՛ր,— ասում էր սայլորդը։

Ես հետևում էի ընկնող աստղերին, վախենում էի, որ տատիս աստղը կարող էր ընկնել։

— Այդքան շատ չեն նայի աստղերին, աստղերը կախարդում են, կկախարդեն քեզ։

Ես ամուր բռնեցի սայլորդի ձեռքից և աչքերս փակեցի։ Չգիտեմ, դրանից հետո քնել էի, թե ոչ, բայց հանկարծ արթնացա ականջ ծակող ձայներից։

— Տարա՜վ, տարա՜վ,— աղմըկում էին պարիսպների ետևից։ Գյուղն արթնացել էր քնից։



digitised by A.R.A.R.@

— Բորենին է, մարդ է տանել,— բացատրեց սայլորդը,— դու քնի՛ր, քնի՛ր:

Հանկարծ բոլոր կտուրներում խարույկներ վառվեցին, մարդիկ իրար ձայն տվեցին, ով հրացան ուներ, սկսեց կրակել, քիչ հետո ծլնգաց նաև գյուղի ժամի միակ զանգը: Բորենիների ահից այդ ամռանը բոլորն էլ կտուրներում էին քնում: Այդ տարի բորենիներ շատ կային Սարդարապատ գյուղի շրջակայքում, նրանք Արաքսն անցել, եկել էին Թուրքիայից: Քիչ հետո բոլորն էլ արթնացան ու վախեցած սեղմվեցին սայլորդին:

— Այս տարի, գարնանը,— շարունակեց նա,— ես դարձյալ այս կողմերն էի եկել: Երկու գիշեր մնացի այստեղ: Երրորդ օրվա լուսադեմին եզները լծեցի, որ ճամփա ընկնեմ, մեկ էլ լսեցի, ձայն են տալիս՝ «Տարա՛վ, տարա՛վ»: Գյուղը միանգամից արթնացավ, խառնվեցին իրար: Ես էլ վազեցի գյուղամեջ և ի՞նչ իմանամ, որ լավ լինի. բորենին տարել էր գյուղի տերտերին: Նրա տան առաջ ընկած էին հողաթափիկներն ու համրիչը, որ բորենին չէր տարել:

Մենք ծիծաղեցինք, ծիծաղելի թվաց սայլորդի պատմածը:

— Գյուղն աղմկեց մինչև արևի դուրս գալը: Արևը բարձրացավ, գյուղը հանդարտեց, ես եզներս քշեցի ու ճամփա ընկա:

Սայլորդը շատ բաներ պատմեց մարդ ուտող գայլերի մասին և երբ վերջացրեց, արևն արդեն բարձրանում էր, մենք գնացինք փշատ հավաքելու, պաշար անելու: Մենք երեխաներ չէինք: Շարք էինք կանգնում, բոլորից առաջ կանգնում էր մեր թմբկահար Ղլլիկը՝ թմբուկը վզին, և նրա թմբուկի կտկտոցի տակ քայլում էինք գյուղով, դուրս գալիս հանդերը կռութ հավաքելու: Թույլ էինք, քաղցած, բայց լուրջ էինք և պարտականության զգացում ունեինք: Մեզ ասել էին, որ մենք փրկելու ենք սովյալ երեխաներին, կերակրելու ենք քաղցածներին: Մեր հավաքած ցորենի կռութները և փշատը տալիս էինք գյուղացիներին: Նրանք մեզ օրհնում էին, քուսպի մնացորդներ էին տալիս: Մենք մարզանքներ էինք անում նրանց համար, մեր մարզանքները դիտում էին և՛ մեծերը, և՛ փոքրերը: Մեր նվագախումբը կազմված էր երեք հոգուց՝ Նազիկը, սայլորդը և Ղլլիկը (նրա ազգանունը Ղևոնդյան էր, մենք փաղաքշաբար Ղլլիկ էինք ասում), որը թմբուկն էր զարկում և շատ բարձր, հզոր ձայնով երգել գիտեր: «Սպարտակ»՝ էինք «բեմադրում» կալերում, «Շամիլի աղոթքը» և նույնիսկ՝ «Ղաչաղ Արսեն»: Մենք լռջանում և «լրջացնում» էինք հանդիսատեսին: Մենք համոզված էինք, որ մեծ գործ ենք անում և անում էինք այդ բոլորը հպարտությամբ, մեծավարի: Մենք երեխաներ չէինք:

Մի ուշ երեկո, երբ արդեն հոգնել և քաղցած էինք, Նազիկն ասաց սայլորդին, որ սայլը լծի և մեզ տանի մի ուրիշ գյուղ: Մենք գիշերով էինք ճանապարհ ելնում, գիշերը հով էր ու հանգիստ: Փոքրերը քնում էին սայլի վրա, իսկ մենք՝ մեծերս ոտքով էինք գնում: Ո՞վ էր մեզ կերակրում, որտեղ և ինչպե՞ս՝ դժվար է ասել: Ի՞նչ օգուտ էր տալիս մեր այցելությունը այս կամ այն գյուղին. դարձյալ դժվար է ասել: Մեր հավաքած հավկով և փշատով ոչ ոք ապրել չէր կարող: Բայց մենք համառորեն անում էինք այդ և հավատում, որ մեծ, լավ, օգտակար գործ ենք անում: Սայլորդի երկու տղաներն էլ մեզ հետ էին:

— Ինչ անում եք՝ ձեզ համար եք անում,— խրատում էր նա տղաներին,— մարդ եք դառնում, ազնվություն եք սովորում: Երեխաներ հո չե՞ք, արդեն ժամանակն է լուրջ լինել:

Ամառն անցնում էր: Վերջանում էին նաև մեր այցելությունները: Մենք տուն էինք դառնում՝ սևացած, նիհարած, կոշտացած ձեռքերով, և տնեցիները նկատում էին, որ մենք փոխվել ենք, առաջվանը չենք:

— Մեծացել, մեծ մարդ ես դարձել,— ասում էր մայրս:

Եվ, իսկապես, տանն էինք, բայց դարձյալ պատկոմներ էինք: Դպրոց էինք գնում, պատկոմներ էինք: Ամեն տեղ մեզ հիշեցնում էին.

— Հո երեխաներ չե՞ք:

Եվ մենք իսկապես որ երեխաներ չէինք այլևս: Մենք մեր մանկությունը չտեսանք: Կարծեք միանգամից մեծացանք:

Մենք տեսանք հեղափոխության երկունքը, տեսանք նրա ծնունդը, մենք հեղափոխության առաջին զավակներն էինք, հասակ առանք, մեծացանք և հիմա տեսնում ենք նրա պատկառելի տարիքը:

Հիմա էլ, երբ որևէ բանից սրտնեղում, մռայլվում ենք, մեզ նույն բանն են ասում.

— Հո երեխաներ չե՞ք:

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@

# Գարնան հանդես



ԹԱԹՈՒԼ ԲՈՂՈՐՋՅԱՆ

Գարնան քամին
Դիպավ ծառին,
Ծառը հուզվեց
Ու բողբոջեց:
Կանաչ քամին
Դիպավ քարին,
Մամուռներին
Նոր գույն տվեց:
Հետո գնաց
Դիպավ հողին,
Հանեց գույն-գույն
Ծաղիկներին:
Քշեց բերեց
Մեղուներին,
Կապույտ, կարմիր
Թիթեռներին:
— Է հե՜յ,— ասաց,—
Ո՞վ է պակաս:—
Շտապեցին
Թռչունները,
Եկան հասան
Մրջյունները:
Քնից կարթնած,
Առուն վնգաց,
Քնած արջի
Դուռը ճռռաց:
Էլ ո՞վ, էլ ո՞վ,
Ոզնին եկավ
Գլորվելով:
Եկան, եկան
Ու կազմեցին
Մի մեծ հավաք,
Քամին եղավ
Նրանց ավագ:
Ու ղղեցին
Դեպի երկինք
Նրանք «կայծակ»
Մի հեռագիր:
Ամպերն իսկույն
Դղրդացին,
Ամպրոպները
Թևեր բացին,
Նրանք՝ վերում,
Իրենք ցածում,
Կատարեցին
Գարնան բացում:

## ՊԻՈՆԵՐԻԱՅԻ ★ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ

1944

ՀՈՒԼԻՍ.— Լենինգրադի № 106 դպրոցի դասարաններից մեկի դռանը փակցված է մի ցուցատախտակ, որի վրա գրված է. «Այստեղ սովորել է հերոս պարտիզանուհի Լարիսա Միխենկոն»:

Երբ սկսվեց պատերազմը, Լարիսան տատիկի հետ ապրում էր Լենինգրադի մարզի Պիչենևո գյուղում: Լարիսան կապվեց պարտիզանների հետ և սկսեց կատարել նրանց առաջադրանքները: Նա թռուցիկներ էր տարածում, տեղեկություններ էր հաղորդում ֆաշիստական կայազորների դասավորության մասին: Լարիսան զոհվեց մարտական առաջադրանքը կատարելիս:



ԼՅՈՆՅԱ ԳՈԼԻԿՈՎ

Տասնչորս տարեկան էր Լ. Գոլիկովը, երբ մտավ պարտիզանական ջոկատ: Նա բազմաթիվ անգամ հետախուզության է գնացել, գնացքներ է պայթեցրել, ավերել ճանապարհներ ու կամուրջներ, ոչնչացրել պահեստներ:

Մի անգամ նա նույնիսկ գեներ-



digitised by A.R.A.R.@

# ԱՆՏԱՌԻ ՄԱՆՈՒԿԸ

*ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ*

Կարծես անտառի մանուկն է առուն,
Նրա փոքրիկը չարաճճի,
Մոր գրկից իջել փախչում է հեռու,
Եվ ծիծաղում է այնպես վճիտ:

Կարծես թե նոր է սովորում քայլել,
Առաջ է վազում, չի համբերում,
Մերթ արևի տակ ծափին է տալիս,
Մերթ պահ է մտնում թփուտներում:

Մերթ թավալվում է, փռվում, ծավալվում,
Կարծես թե ոտքը դիպչավ քարին,
Մերթ նվաղում է ու մերթ հորդանում,
Ու գոչգոչում է ճանապարհին:

Երգում է ուրախ իր ամբողջ ձայնով,
Ծտի նման նոր լեզու առած,
Եվ քաղցրակարկաչ վազում կածանով
Ու հեռանում է ինքնամոռաց:

Ու չի վրդովվում անտառն էլ երբեք
Հեռու գնացող մանկան համար:
Շնչում է խորը եղերքից-եզերք
Եվ բարի ճամփա մաղթում նրան:

*Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ*

# ՏԱՍՆՎԵՑԵՐՈՐԴ

## ԱՐՏԵԿ

Ղրիմի հրաշալի անկյուններից մեկն է դա, եթե ոչ ամենահրաշալին: Բնությունը ոչի՞նչ, ոչի՞նչ չի խնայել. ձախ կողմում՝ սարեր, աջում՝ անտառներ, իսկ դիմացը՝ մեղմօրոր խայտանքով ծփացող Սև ծովը:

Արտեկը ամբողջովին ընդգրկելու համար պետք է բարձրանալ Արջասար: Հինգ կիլոմետր երկարությամբ փռված ճամբարը ասես հեքիաթային աշխարհ լինի՝ կապույտով շղարշված: Տեսարանը լրացնում ու ամբողջացնում են տասնմեկ ճամբարների մասնաշենքերը: Յուրաքանչյուրը մի գետի, մի լճի անունով՝ «Անգարա», «Սևան», «Ենիսեյ», «Վոլգա», «Կլեն», «Բայկալ»... Կարծես ողջ մայր բնությունն է հյուր եկել երեխաներին՝ իր գետերով, լճերով, անտառներով ու դաշտերով:

## ԻՆՉ Է ՆՇԱՆԱԿՈՒՄ ԱՐՏԵԿ

Տեղանքը անհիշելի ժամանակներից այդպես են կոչում: Ենթադրություններ կան, որ այն առաջացել է հին հունական «Օրտեկ» բառից, հնչյունափոխվելով դարձել է Արտեկ: Կան նաև ենթադրություններ, որ առաջացել է Արջասար անվանումից. հունարեն արջին ասում են «արկտոս»:

Գիտնականները ուրիշ մեկնաբանություններ էլ են տալիս, բայց ոչ մեկը դեռ հիմնավորված չէ: Ամենից ավելի ճիշտ այդ անունը մեկնաբանել է մի պիոներ: Երբ նրան հարցրել են, թե ինչ ասել է «արտեկ», նա զարմացել է.

— Ի՞նչ է Արտեկը: Մի՞թե չգիտեք: Դա մեր պիոներական ճամբարն է:

## ՀԻՄՆԱԴՐՈՒՄԸ

Բժիշկ Զինովի Պետրովիչ Սոլովյովը հանձնարարություն է ստանում կառավարությունից, գտնել մեր

## ՊԻՈՆԵՐԻԱՅԻ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ ★

ռալի ավտոմեքենա է պայթեցրել, ջոկատ բերել նրա շատ կարևոր փաստաթղթերը, որոնք իսկույն ուղարկվել են Մոսկվա:

Պատանի հերոսը չապրեց մինչև այն օրը, երբ թերթերում հրապարակվեցին նրան Սովետական Միության հերոսի կոչում շնորհելու հրամանը

1960 թ. հունիսի 1-ին նրա հուշարձանը կանգնեցվեց Մոսկվայում:

*1958*

ՀՈՒՆՎԱՐ.— Մոսկվայի մարզի էլեկտրոստալ քաղաքի № 1 դպրոցի պիոներական դրուժինան նոր տարին դիմավորեց անտառի մեջ: Երեխաները նախօրոք անտառում գտել էին մի բացատ և նրա կենտրոնում գտնվող եղևնին զարդարել խաղալիքներով: Բացատում կառուցվել էին բլրակներ, սառցե ամրոց:

Երեխաները տոնակատարության մեկնեցին սահնակներով: Ձիերը



digitised by A.R.A.R.@

# ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ

երկրի այն ամենալավ անկյունը, որի կլիման ամենակազդուրիչը լինի երեխաների համար։ Ահա և նա գալիս է Ղրիմ, զննում է ամեն մի բուռ հողը և գտնում այս տեղը պիոներական ճամբարի համար։

Զինովի Պետրովիչ Սոլովյովի գլխավորությամբ էլ 1925 թ. հիմնադրվում է Արտեկի ճամբարը։ Այդ տարի Արտեկում քիչ թվով պիոներներ հանգստացան, որովհետև դեռ շատ փոքր էր պիոներական ճամբարը, մասնաշենքեր չկային, ընդամենը 10 վրան էր տեղադրված։ Հաջորդ տարի ճամբարում հանգստացողների թիվը հասավ հազարի։ Տարեցտարի այդ թիվը մեծացավ, կրկնապատկվեց, տասնապատկվեց, և այժմ ամեն տարի այստեղ հանգստանում է 28000 պիոներ։

Ամեն մեկին բախտ չի վիճակվում հանգստանալ Արտեկում։ Արտեկը չի կարող իր գիրկն առնել այնտեղ հանգստանալ ցանկացող բոլոր պիոներներին։ Այդ պատճառով էլ մեր մեծ Միության հանրապետություններից ամեն մեկն իր «Արտեկն» ունի. հայկական Արտեկը (Արևիկ) գտնվում է Սևանի ափին, լիտվականը՝ Կաունասի մոտ, ղազախականը՝ Չարվակյան լճի, ադրբեջանականը՝ Տիսայի ափին, հյուսիսային Արտեկ կա Բրատսկի մոտակայքում և շատ ու շատ ուրիշ վայրերում։



«Սևան» հանգստյան տան շենքը Արտեկում։

## ԱՌՕՐՅԱՆ

Դեղեցիկ է արտեկյան առավոտը։ Ծովեզերքից բարձրացող արևի մեծ սկավառակը իր ցոլքն է նետում ալիքների վրա, և կախարդական պատկերը հափշտակված դիտում են բոլորը։

Արևածագը դիմավորելուց հետո սրընթաց մակույկները զբոսանքի են տանում պիոներներին։

Նրանց հանգիստը հագեցված է խաղերով, մրցումներով, հանդիպումներով, էքսկուրսիաներով։ Միջոցառումներից ուշագրավ են ազգային օրերը, որ կրկնվում են բոլոր հերթափոխերին։ Ամեն մի հանրապետության ներկայացուցիչներին հատկացվում է մի օր, տրվում է խաղերի, հանդեսների, մրցումների համար անհրաժեշտ բոլոր իրերն ու առարկաները։ Նույնիսկ խոհանոց է տրամադրվում նրանց՝ ազգային ճաշատեսակներ, խորտիկներ պատրաստելու համար։

Որ հանրապետության խումբը իր օրը հետաքրքիր է անցկացնում՝ արժանանում է մրցանակի։

Արտեկում ծանծրույթն ու անգործությունը տեղ

## ՊԻՈՆԵՐԻԱՅԻ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ

նրանց տրամադրել էին ավագ ընկերները։

1959

ՀՈՒԼԻՍ.— Ղարադաղ-Թիբիլիսի-Երևան գազամուղը Հայաստանում կառուցելիս, պայթեցնողները ստիպված էին աշխատել բարձր լեռների շրջաններում, որտեղ շոգ օրերին ջուր չէր լինում։ Այդ իմացան Կույբիշևկա գյուղի պիոներները և որոշեցին օգնել շինարարներին։ Նրանք ոչ միայն սառը ջուր էին մատակարարում, այլև տեղ էին հասցնում նամակներ ու թերթեր։

1960

ՀՈՒՆԻՍ.— Ամբողջ աշխարհի երեխաների բարեկամությունն ու խաղաղությունն ամրապնդելու համար, համամիութենական Արտեկ պիոներական ճամբարը պարգևատրվեց Խաղաղության համաշխարհային խորհրդի պատվոգրով։



digitised by A.R.A.R.@

չունենք։ Ծրագրված ուշագրավ միջոցառումներից բացի, լինում են նաև անսպասելի հանդիպումներ գրեթե բոլոր հերթափոխերում։

## ՉԻՊՈԼԼԻՆՈՅԻ «ՀԱՅՐԸ» ԳՆՈՒՄ Է ԱՐՏԵԿ

Լուրը Մոսկվայից Արտեկ է հասնում հեռախոսով. «Ձեզ մոտ է գալիս Ջաննի Ռոդարին»։ Ճամբարում մեծ ոգևորություն է առաջացնում այդ նորությունը, և բոլորը անհամբեր սպասում են Չիպոլլինոյի «հոր»։ Բայց բերող ինքնաթիռը մի քանի պտույտ կատարելով Սիմֆերոպոլի վրա, վերադառնում է... Մոսկվա։

Հաջորդ օրը Ջ. Ռոդարին գնացքով է գալիս Արտեկ։ Պիոներների շարքերից ընդառաջ է վազում նրան ոչ այլ ոք, քան ինքը՝ Չիպոլլինոն.

— Թանկագին Ջաննի Ռոդարի, շատ շնորհակալություն քեզ, որ դու ինձ անուն տվիր և ուղարկեցիր աշխարհի բոլոր կողմերը ճամփորդության... Քո շնորհիվ հիմա ես աշխարհի բոլոր անկյուններում ունեմ ընկերներ ու բարեկամներ։ Իսկ ամենաշատ բարեկամները ես ունեմ Սովետական Միությունում, ուր անչափ լավ են ընդունվում քո գրքերը։ Ես խնդրում եմ ինձ վերաբերվող նոր ու հետաքրքիր արկածներ գրես։

Չիպոլլինոն Չիտայից եկած պիոներ Միշա Նեկրասովն էր։ Ռոդարին իր ծոցատետրում կատարել է առաջին գրառումը. «Չիպոլլինո-Միշա»։

Ջաննի Ռոդարու համար երեխաների ամենամեծ անակնկալն ու նվերը եղավ «Չիպոլլինոյի արկածները» պիեսի առաջին նկարահանած ժապավենը, իրենց իսկ ուժերով, որը նվիրում են մեծ մանկագրին։

— Ինձ համար,— ասում է Ռոդարին,— սա ամենամեծ նվերն է։ Դժբախտություն չէ, որ նկարը անձայն է, ես այն անգիր գիտեմ։ Հավատացած եմ, որ Չիպոլլինոն Արտեկում իրեն զգում է գերազանց, և նրա հաջորդ արկածը տեղի կունենա Արտեկում։

Ուրախ օրերը հաջորդում են իրար։ Գալիս է նաև հրաժեշտի պահը, և Չիպոլլինոյի «հայրը» զսպելով հուզմունքը, ասում է.

— Կարծում եմ, որ աշխարհում ոչինչ չի կարող համեմատվել Արտեկի հետ... Հռոմում շատ գեղեցիկ պալատներ կան, բայց այդ հսկայական քաղաքում չկա ոչ մի պիոներական պալատ... Շատ եմ ցավում, որ այս ամենը չի տեսել Նեապոլի քաղաքապետը, նա շատ բան կունենար սովորելու։

## ԾՈՎԵՐԻ ՏԻՐԱԿԱԼԸ

Այսինքն՝ Նեպտունը։

Ավանդությունը պատմում է, որ նա ապրում է ծովերում և հազվադեպ է դուրս ելնում այնտեղից։ Բայց քանի որ Արտեկը շատ գեղեցիկ է ու գրավիչ, Նեպտունը, բացառության կարգով, ամռան ամիսներին հաճախ է ելնում ծովից։

Ափը թնդում է ուրախ կանչերից, հենց որ ծովի հարթության վրա երևում է Նեպտունի եռասայր թագը։ Ջրադահուկների վրա, գավազանը ձեռքին, բարձր արագությամբ ափ դուրս գալուն պես, նա նախ մեծ դատ է բացում։ Անկարգապահների, չարերի համար սահմանված են պատժի յուրօրինակ միջոցներ։ Հետո սկսվում է մրցությունը. երգի, պարի, արտասանության, ֆիզիկական պատրաստականության։ Ծովերի տիրակալից նվեր են ստանում հերթափոխի ամենաուժեղները, հնարամիտներն ու համարձակները։

Հրաժեշտի արարողությունից հետո, Նեպտունը գնում է նորից ծով և կամաց-կամաց ընկղմվում ջրի մեջ։

## ՈՒԹԵՐՈՐԴ ՀՐԱՇԱԼԻՔԸ

Աշխարհը ոտքի տակ առած գրոսաշրջիկներից և ուսումնասիրողներից շատերն են այցելում Արտեկ։ Արտեկ են գալիս նույնիսկ այլևայլ երկրների թագավորներ, խաներ, պրեզիդենտներ, պրեմիեր-մինիստրներ և ուրիշ-ուրիշ նշանավոր մարդիկ։ Այս հեքիաթային աշխարհը նրանց բոլորի վրա թողնում է անջնջելի տպավորություն։ Ճամբարականները պիոներներին վայել ընդունելություն են ցույց տալիս բոլորին, ծանոթացնում իրենց թագավորությանը, ուր չկան խաներ, թագավորներ, իշխաններ ու պրեմիեր-մինիստրներ։

Հուշագրքում նրանց թողած գրառումների մեջ հաճախ ենք հանդիպում այսպիսի արտահայտության. «Արտեկը իրավամբ կարելի է համարել աշխարհի ութերորդ հրաշալիքը»։

Այդ հրաշալիքը միայն սովետական երեխաների համար չէ։ Ամռան ամիսներին ճամբարում ծածանվում են շուրջ 50 երկրների դրոշներ, որոնք վկայում են նույնքան երկրներից Արտեկ եկած երեխաների ներկայությունը։

## ՇՇԱՅԻՆ ՓՈՍՏ

Դժվար է ասել, թե ով և երբ է Արտեկում սկիզբ դրել դրան, բայց այժմ չկա մի տոնակատարություն, որ չավարտվի շշային փոստով։

Ավանդության համաձայն շիշը մակույկով տանում են մինչև չեզոք ջրեր և գցում ծովի մեջ։ Շշի մեջ լինում է նամակ՝ մի քանի լեզուներով, որպեսզի բոլոր աշխարհամասերում կարողանան ընթերցել. «Արտեկի պիոներները ողջունում են աշխարհի բոլոր երեխաներին։ Մենք, ինչպես բոլոր երեխաները, խաղաղություն ենք ուզում... Գտնողներին խնդրում ենք գրել Արտեկ...»

Շշային փոստի նամակներից մեկը 1963 թվականին ընկավ Հունաստանի ազգային հերոս Մանոլիս Գլեզոսի ձեռքը։ Ահա թե ինչ գրեց նա. «Թանկագի՛ն բարեկամներ, հունական քաղաքական բանտարկյալներս անչափ շնորհակալ ենք ձեզանից՝ մեր ազատության պայքարին ցուցաբերած օգնության համար...» Հաջորդ տարի Մանոլիս Գլեզոսը Արտեկում էր։

Շշային փոստի միջոցով բարեկամություն է ստեղծվել շատ երկրների երեխաների հետ։

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*



digitised by A.R.A.R.@

# ՄԻ՛ՇՏ ԱՌՈՒՅԳ, ՄԻ՛ՇՏ ՊԱՏՐԱՍՏ

Անսովոր խաղաղ ու նոր կյանք էր սկսվել Դիլիջանում: Դպրոցները կանոնավոր աշխատում էին, ստեղծվել էր կոմերիտական կազմակերպություն, որտեղ ընդգրկվել էին բարձր դասարանների աշակերտները: Հաճախ երեկոներ էին կազմակերպվում, որտեղ երգում էին հեղափոխական երգեր, արտասանում էին Եղիշե Չարենցի և Ծուշանիկ Կուրղինյանի ոտանավորները:

Կազմակերպվում էին առաջին շաբաթօրյակները, որոնց ոգևորված մասնակցում էին բոլորը, քանի որ կարգավորվում ու մաքրվում էր քաղաքը, մանավանդ «Գրաֆսկի պերեուլոկ» կոչվող փողոցը:

Ընդհանուր խանդավառությունը համակել էր նաև մեզ՝ պատանիներիս:

Լսել էինք, որ Երևանում և Ալեքսանդրապոլում (Լենինական) պատկոմական կազմակերպություններ են ստեղծվել: Եվ մեր դասարանի աշակերտներ Արտո Ամիրջանյանը, որի մեծ եղբայրը՝ Աշոտը կոմերիտական էր, Սուրիկ Բաղալյանը, Ծավարշ Ջնջոյանը, Սուրեն Պողոսյանը և ուրիշ շատերը նաև այլ դասարաններից, որոշեցինք հավաքվել ու ամեն օր մեր պարապմունքներն անցկացնել:

Պարապմունքները անց էինք կացնում անտառի մի բացատում: Պարապմունքն ավարտելով, մենք շարքով իջնում էինք Երևանյան խճուղին ու այնտեղից մեր միակ փողի նվագի տակ շարժվում դեպի քաղաքի կենտրոն, որտեղ գտնվում էր մեր դպրոցը:

Ես, որ մեր խմբի կազմակերպիչն էի և ինձ «երեսնապետ» տիտղոսն էին տվել, քայլում էի շարքի կողքից ու կանչում.

— Մե՛կ, երկո՛ւ, մե՛կ, երկո՛ւ... Ձա՛խ, ա՛ջ, ձա՛խ, ա՛ջ...

Այսպես կանոնավոր, բայց առանց ղեկավարության, անց էինք կացնում մեր պարապմունքները, մինչև որ մի օր Դիլիջանում երևաց կապույտաչյա շարժուն մի երիտասարդ, մի քիչ տարօրինակ տեսքով. նա խաքի կտորից բոլորեզր գլխարկ ուներ գլխին և հագին կարճ շալվար էր՝ դարձյալ խաքի գույնի:

Այդ երիտասարդը Աբգար Մովսիսյանն էր, որ հետագայում հայտնի պիոներական գործիչ դարձավ:

Աբգար Մովսիսյանի ստեղծած պատկոմական կազմակերպության կորիզը բնականաբար, մեր ինքնագործ ջոկատը հանդիսացավ: Դա ցույց է տալիս, թե այն ժամանակ միավորվելու և կազմակերպվելու ինչպիսի մեծ ձգտում կար պատանիների մեջ:

Հետագայում մեզ մոտ իբրև պիոներական գործիչ հաճախ էր գալիս նաև Պարույր Հարությունյանը, որը հիմա չնայած իր ալեխառն մազերին, առույգ է ինչպես այն տարիներին և վաղեմի ընկերներին հանդիպելիս, նրանց այն հարցին, թե ինչպես է, սրատախանում է.

— Մի՛շտ առողջ, մի՛շտ պատրաստ...

Կես դար է բաժանում մեզ այն օրերից և այժմ, երբ անցնում եմ բոլորովին փոխված ու գեղեցկացած Դիլիջանով, մտովի իմ առջևից անցնում է մեր պատկոմական ջոկատը՝ առույգ, աշխույժ, հպարտ դոփելով գետինը, իր անբաժան «սիգնալի» նվագի ներքո, հաստատուն քայլելով «դեպի ապագան»:

*ԲԱԲԿԵՆ ՇԱՀՈՒՄՅԱՆ*

## ԼԱ՛Վ ՊԱՀԻՐ

*Ս. ՇՉԻՊԱՉԵՎ*

Դու, որ փողկապ ես կապում,
Այն լա՛վ պահպանիր,
Չէ՞ որ նա մեր դրոշի
Գույնն ունի կարմիր:
Այդ դրոշով կռվի են
Ելել անվեհեր
Եղբայրներն ու քույրերը
Եվ հայրերը մեր:
Ծողում է այդ փողկապը
Քո մատաղ կրծքին
Ու շիկնել է ասես քո
Վառվռուն տեսքից:
Դու, որ փողկապ ես կապում,
Լա՛վ պահիր նրան,
Նա ունի մեր դրոշի
Բոցը հուրհրան:



digitised by A.R.A.R.@



# ՊԻՈՆԵՐ-ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ԿՅԱՆՔԻ ՊԱՏԿԵՐՈՒՄԸ ՆԱՄԱԿԱՆԻՇՆԵՐՈՒՄ

ՍՍՀՄ կապի մինիստրությունը իր ստեղծման օրից հազարավոր նամականիշեր է թողարկել, մեր երկրում կատարվող կարևոր իրադարձությունները արտացոլող։ Թողարկվել են նաև նամականիշեր նվիրված պիոներ-դպրոցականների կյանքին ու պատմությանը։

1929 թվականի օգոստոսին թողարկված տարբեր չափսի ութ նամականիշերը նվիրված են համամիութենական պիոներական առաջին հավաքին։ Հաջորդ տարում թողարկված նամականիշի վրա պատկերված են երեք պիոներ, որոնք ձևավորում են «Լենինեց» պատի թերթը։ Այս նամականիշը նվիրված էր համամիութենական մանկավարժական առաջին ցուցահանդեսի բացմանը։

Պիոներ-դպրոցական կյանքը վառ ու բազմակողմանի արտացոլում է գտել 1936 թվականի 24 նամականիշերից բաղկացած շարքում։

1958 թվականին ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը մեծ շուքով նշեց բնության մեծ վերափոխիչ Իվան Վասիլևիչ Միչուրինի ծննդյան 100-ամյակը։ Այդ առիթը յուրովի օգտագործեց նկարիչ-ձևավորող Ս. Պոմանսկին։ Ութ նամականիշերում պատկերել է բնության մեծ բարեկամի կյանքն ու առօրյան։ Դրանցից մեկում Միչուրինը իր պտղատու այգում զրուցում է պիոներ-դպրոցականների հետ։

Առավել ուշագրավ նամականիշեր է թողարկվել հետագա տարիներին, որոնք յուրովի պատկերում են մեր երկրի պիոներ-դպրոցականների 50-ամյա պատմության էջերը։

ՍՏԵՓԱՆ ՀՈՎԻՎՅԱՆ

## «ՊԻՈՆԵՐ—50»



Խաչբառն ու բառաշղթան ճիշտ լուծելուց և գաղտնագրի թվերը տառերով փոխարինելուց հետո, դուք կկարդաք պիոներական կազմակերպության նշանաբանը։

Համարիչը ցույց է տալիս բառաշղթայի կամ խաչբառի հերթական համարը, իսկ հայտարարը՝ համապատասխան տառը։

Համարիչի կողքին եղած կետը ցույց է տալիս, որ տառերի տեղադրումը պետք է կատարել խաչբառից։

Ուղղահայաց

1. Հեղափոխության երիտասարդ հերոս, որի անունով է կոչվում Երևանի պիոներների պալատը։
4. Սովետական հայտնի մանկագիր։
5. «Պիոներ կանչում» պարբերաբար գործող գիտական բաժնի անվանումը։
6. Հնդիկ մեծ բանաստեղծ, որը 1930 թ. հանդիպում է ունեցել Մոսկվայի պիոներների հետ։

Հորիզոնական

2. Ձեզ բոլորիդ հայտնի և սիրելի վիպակի պատանի հերոս, որի անունով պատերազմի տարիներին և հետագայում կոչվեց լայն տարածում գտած պիոներական շարժումը։
3. Պիոներական հանդիսավոր հավաքների ժամանակ պարտադիր միջոցառում։
7. Հայ մանկագիր։
8. Նախկինում գործող համամիութենական կամավոր սպորտա



ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ... Гос. Библ... ՀՍՍՀ-Արմ... Ա. Մյասնիկյանի անվան

digitised by A.R.A.R.@

# ԳԱՐՈՒՆԸ ՄԵՐ ԳՅՈՒՂՈՒՄ

ԼԻՊԱՐԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ

Արագիլն է հեռվից եկել,
Թառել բարդու ճյուղին,
Նա գարնան ջերմ խինդն է բերել
Իմ հայրենի գյուղին:
Քնից պարթնել եղինջ ու ղաղձ,
Նետել վերմակը ձյան,
Չափարի տակ՝ աչքները թաց,
Զրուցում են անձայն:
Գառնուկներն են ցատկոտում խենթ՝
Կանաչ արոտներում,
Նրանք էլ են հավքերի հետ
Գյուղին գարուն բերում:
Տրակտորն է սարալանջին
Սևահողը վարում,
Նա էլ գարնան իր առաջին
Երգ-տողերն է շարում:
Պապս բահը ձեռքին դողդոջ՝
Առվի հունն է բանում,
Նա գարուն է նորաբողբոջ
Մեր հին այգին տանում...

յին ընկերություն, որի հիմնական նպատակներից էր՝ դպրոցականներին մասսայաբար ներգրավել զբաղվելու ֆիզիկական կուլտուրայով և սպորտով։

9. Պիոներական ճամբար՝ Ծաղկաձորում։

## ԲԱՌԱՇՂԹԱ

1. Գեղատեսիլ վայր՝ Հայաստանում, որտեղ բազմաթիվ պիոներներ ամռանը իրենց հանգիստն են անցկացնում։
2. «Վիկտոր Մալեևը տանը և դպրոցում» վիպակի հեղինակը։
3. Պիոներական կազմակերպության խորհրդանիշ։
4. Ինչպե՞ս էին կոչվում առաջին պիոներները։
5. Հերոս պիոներ, որին գազանաբար սպանեցին կուլակները։
6. Քաղաք, որտեղ անց է կացվել դպրոցականների համամիութենական 8-րդ սպարտակիադան։
7. Պիոներական միավորում։
8. Համամիութենական պիոներական ճամբար։
9. Հեղափոխության պատանի հերոս, որի անունը գրանցված է Վ. Ի. Լենինի անվան պիոներական կազմակերպության Պատվո գրքի մեջ։

Կազմեց՝ ԼԵՎՈՆ ՂԱԶԱՆՋՅԱՆԸ


Լույս է տեսնում 1923 թվականից:



# ՊԻՈՆԵՐ

№ 5 մայիս 1972 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции:
Ереван-200, ул. Кармир банаки, № 15, почт. инд. 375200.

*Հասցեն՝ Երևան—200, Կարմիր բանակի փողոց, № 15, փոստային ինդեքս՝ 375200։*
*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։*

ՎՖ 04803: Պատվեր՝ 583: Տպաքանակ՝ 76100: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 6/V 1972 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:



digitised by A.R.A.R.@

